կոչը կը յայտնէ թէ հնգամեայ ծրագրի այս երրորդ տարեշրջանին միայն, տնտեսական արտադրութիւնը պէտք է հաւասարի նախապատերազմեան շրջանի ամբողջ ճարտարարուեստական արտադրութեան։

1930-1931ի ընթացքին, պէտք է ստացուի 7,5 միլիոն թոնո ձուլածոյ, 74,5 միլիոն թոնօ ածուխ։ Պէտք է շինուին 2 միլիառ 500 միլիոն ռուբլիի նոր մեքենաներ, 7,5 միլիոնի երկրագործական մեքենաներ, եւլն.։

Այս ծրագրի իրականացման համար, պէտք պիտի ըլլայ ոտքի հանել բանուորական դասակարգի բոլոր ուժերը։

Կոչը յետոյ կը թուէ բոլոր այն միջոցները որոնց պէտք է դիմուի։ Կուսակցութեան, սէնտիքաներու եւ տնտեսական կազմակերպութեանց բոլոր ուժերը պէտք է ջանան ուժ տալ ընկերվարական մրցակցութեան, քաջալերելու համար գործաւորներու նախաձեռնութիւնը։ Ամէն միջոցի պէտք է դիմուի ուժ տալու համար աշխատանքի կարգապահութեան, եւ ապահովելու համար գործաւորներու «ինքնաքննադատումը»։

Ասկից զատ, միջոցներ ձեռք պիտի առնուին բարելաւելու համար բանուորներու պարէնաւորումը եւ հրաւէր պիտի ուղղուի մամուլին ու հանրային կարծիքին որ ուժ տան ինքնաքննադատութեան եւ պայքարին տնտեսական ներկայ տագնապին դէմ։

## Քոսթի յաղթական թռիչքը

Փարիզէն դէպի Նիւ-Եորք իր յաղթական թռիչքէն յետոյ, որ ընդունուեցաւ արժանի խանդավառութեամբ եւ հիացումով, ինչպէս գրեր էինք, Քոսթ իր ընկերով Պելլոնթի հետ, ճամբան շարունակեց դէպի Տէլլաս (Թէքսաս) ուր հասաւ հինգշաբթի ժամը 17,37ին (ա. ժ.)։

Շահելու համար գնդ. Իսթէրվուտի մրցանակը (25,000 տ.) որ հաստատուած էր քաջալերելու համար Փարիզէն Տէլլաս թռիչքը, Քոսթ եւ Պելլոնթ պէտք է կտրէին 2200 քիլոմեդրի հեռաւորութիւն մը եւս։

Մրցանակի պայմանները թոյլ կուտային օդանաւորդներուն Նիւ-Եորքի մէջ հանգստանալ 72 ժամու չափ։ Բայց անխոնջ Ֆրանսացիները պէտք չունեցան այդքան սպասելու եւ ժամանակէն առաջ սկսան սաւառնիլ եւ անցնելէ յետոյ Փէնսիլվանիոյ, Օհիոյի, Քէնթուքքի եւ Արխանսասի վրայով, անվտանգ հասան նշանակուած վայրը։

## Հայ մը քաղաքական թեկնածու Պոլսոյ մէջ

Սէրպէսթի կուսակցութեան գործադիր մարմինը կազմուեցաւ, անմիջապէս քաղաքական գործունէութիւն մը եւ շարժում ստեղծելու մտադրութեամբ։ Պոլսոյ թաղապետական ընտրութիւններուն մէջ Սէրպէսթիի թեկնածուներուն ցանկը արդէն պատրաստուած է։ Այս թեկնածուներու ցանկին մէջ կան Հայ մը, Յոյն մը, Հրեայ մը։

Ֆէթհի եւ իր կուսակիցներէն մէկ քանիներ արդէն մեկնեցան Իզմիր, հոն կազմակերպելու համար մասնաճիւղ մը։



## Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ԿՈՄԻՏԷԻՆ ԺՈՂՈՎԻ

կը հրաւիրէ բոլոր խումբերու ներկայացուցիչները, այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին 64 Rue des Ecoles, Chope Parisienneի վերնայարկը։

Օրակարգ.— Զեկոյց Շրջ. ժողովի պատգամաւորներու, հաշուետուութիւն շրջ. կոմիտէի եւ ընթացիկ հարցեր։

Ժողովին կրնան մասնակցիլ ցանկացող ընկերներ։

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ ԽԱՆԱՍՈՐԻ ԱՐՇԱՒԱՆՔԻ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ԱՌԹԻՒ

կազմակերպուած Հ. Յ. Դ. Վալանսի Շրջ. կոմիտէի կողմէ

մասնակցութեամբ Քրիստափոր, Կայծակ եւ Բաբկէն Սիւնի ենթակոմիտէներու։ Կիրակի առաւօտ ժամը 9էն մինչեւ իրիկուան ժամը 6, Սէն Փէրիի ծանօթ դաշտին մէջ։

Բանախօսութիւն, նուագ, երգ, արտասանութիւն եւ հաճելի անակնկալներ։ Ճոխ պիւֆէ՝ ժողովրդական գիներով։

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ։

## Ա. Ե. Հ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻ ԵՐԿՐՈՐԴ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

Վաղը Կիր. Սէն Քլուի անտառին մէջ, առաւօտէն մինչեւ իրիկուն։

Կը նախագահէ Պ. ԱԼ. ԽԱՏԻՍԵԱՆ

Երգ, հայկական եւ ռուսական պարեր, ճազ

Կը մասնակցի ԵՓՐԱՏ երգչախումբը

ՃՈԽ ԵՒ ՄԱՏՉԵԼԻ ՊԻՒՖԷ

Հաղորդակցութեան միջոցներ.— Շոգենաւ՝ իջնել Սէն Քլու։ Թրամվէյ թիւ 2 եւ 25 իջնել terminus. Pavillon Bleuի առջեւ, ելեկտրական գնացք առնել Սէն Լազարէն եւ իջնել Սէն Քլու, այնտեղից իջնել մինչեւ Pavillou Bleu.

Առաջնորդները կը սպասեն թրամվէյի վերջաւորութեանը։

**Յետաձգուած է** ՍԱՀԱԿ—ՄԵՍՐՈՊ Դպրոցարանի դաշտահանդէսը որ տեղի պիտի ունենար այս Կիրակի Արժանթէօյի մէջ։

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՌՈՄԱՆԻ ՄԷՋ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ Ա. Ե. Հ. Կ. ԽԱՉԻ ԿՈՂՄԷ

Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին Ժան Ժոռէսի սրահին մէջ Հովանաւորութեամբ Ռոմանի քաղաքապետ Պ. Էրնէսթ Պոնարտէլի

Մուտք 2 ֆրանք Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ԱԼՖՈՐՎԻԼԻ Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին ընկեր Զօրմիսեանի տունը։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։

ԱՆԻԷՌ-Պուա-Քոլոմպի Զէյթուն ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Եռագոյն, Վիշապեան եւ Փոթորիկ խումբերու ընկերները այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ եւ զեկոյց։

ԳԱՒԱՌ

ՎԻԷՆԻ կոմիտէն իր շրջանի բոլոր խումբերը (Քրիստափոր, Ապառաժ եւ Ռոստոմ) ընդհ. ժողովի կը հրաւիրէ վաղը Կիրակի ժամը 2ին, Կոմիտէի «Խաժակ» ակումբին մէջ։ Կարեւոր օրակարգ.— Զեկոյց Ը. Շրջ. ժողովի մասին եւ նոր կոմիտէի ընտրութիւն։ Ժողովէն վերջ բոլոր ներկայ ընկերները պիտի լուսանկարուին։ Կը խնդրուի բոլոր ընկերներէն ճիշդ ժամանակին ներկայ գտնուիլ իրենց անդամատետրերով միասին։

Վ.ԱՆԵՑԻ Գարեգին Մանուկեանց կը խնդրուի հանդիպիլ խմբագրատունս կարեւոր գործի մը համար։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Ֆնտըճաքցի Օր. Կիւրճի Իսրայէլեան, մօրանուն՝ Դամամ, հօր անուն Փանոս քոյրերը Ովսաննա, Հռիփսիմէ, Մարթա, եղբայրները Դանիէլ, Յովհաննէս։ 12 տարի առաջ անյայտացած է Համայի (Սուրիա) կողմերը։ Կը կարծուի թէ այժմ կը գտնուի Պոլիս։ Ճշգրիտ լուր տուողին 200 ֆր. նուէր։ Իմացնել՝ Toros Israélianի, Traverse Chevalier No. 20, St. Loup, Grand Pins. Marseille.

— Ամերիկայէն Ճիվան Էրքէլէթեան կը փնտռէ իր եղբայրը Պետրոս Էրքէլէթեան որ կը գտնուի Փարիզ կամ շրջականները։ Իմացնել յառաջի վարչութեան։

— Կը փնտռուի Կիրակոս Ճօրթեան որ կը բնակէր 10 Rue de la Paix, Lilas (Seine). Իմացնել Յառաջի վարչութեան։

**Կը փնտռուի** վարպետ կօշկակար մը որ գիտնայ կօշիկի նորոգութիւն ընել։ Լաւ պայմաններ։ Ֆրանսերէն խօսիլ անհրաժեշտ է։ Դիմել «Au Ressemelage de Luxe», 22 Rue du Président-Wilson, Levallois Perret, մէթրօ Porte Ghamperretի մօտ։

**Ծախու է** ճաշարան - սըրճարան մը թրամուէյի գծին վրայ, Ավընիւ Վէրտէօն (Իսի-լէ Մուլինօ) փողոցին մէջ։ Լաւ յաճախորդ (մեծ մասը Ալճերիացիներ են)։ Մանրամասնութիւններու համար դիմել կէսօրին ժամը 12ին կամ իրիկունները ժամը 6—7 Միրիճան Շիրանեանի 92bis Ave. Verdun, Issy-les-Moulineaux.



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

## Իրաքի վարչապետը եւ Թուրքիա

Միջագետքի վարչապետ Նուրի փաշա, որ շաբաթէ մը ի վեր Էնկիւրի կը գտնուէր, հետեւեալ յայտարարութիւնը ըրաւ իր երկիրը մեկնելէ առաջ.

«Տեսնուեցայ Վարչապետ փաշային եւ արտաքին գործավարին հետ ու աշխատեցանք աւելի ամրապնդել երկու երկիրներուն արդէն բարեկամական յարաբերութիւնները։ Երկու երկիրները շահագրգռող խնդիրները բարեացակամութեամբ եւ բարեկամօրէն կարգադրուած են,

«Անցեալները Միջագետքէն Թուրքիա կատարուած յարձակման դէպքին վրայ, Միջագետքի կառավարութիւնը պէտք եղած բոլոր միջոցները ձեռք առաւ եւ այսպէս, գործնական կերպով ցոյց տուաւ իր բարեացակամութիւնը։

«Միջագետքի հողին վրայ, Թուրքիոյ դէմ ասկէ վերջ ամենափոքր դէպքի մը անգամ տեղի չպիտի տրուի։ Այցելութիւն պիտի տամ Կազի փաշային, զոր շատ կը գնահատեմ եւ յետոյ պիտի մեկնիմ»։

## Թուրք հակապետական գրգռութիւններ

Թուրք ներքին նախարարը շրջաբերականով մը հրահանգեց տեղական բոլոր իշխանութիւններուն, որ արգիլեն վերջերս կատարուած գրգռութիւնները՝ ընդդէմ զինուորական ծառայութեան եւ ինպատ արաբական տառերու գործածութեան եւ տուրքերու վերացման։ Գրգռիչները կը հրաւիրեն ժողովուրդը դէմ շարժիլ օրէնքներուն։

## Թուրք համայնավարները

Թուրք 30ի չափ համայնավարներու ձերբակալումէն յետոյ, Պոլսոյ ոստիկանութիւնը կը շարունակէ անոնց տուներուն մէջ կատարել խուզարկութիւններ, որոնց ընթացքին, երեւան հանեց գաղտնի տպարան մը։ Բնիկ Խրիմցի երկու համայնավարներ եւս ձերբակալուեցան։

## Քիւրտերը եւ Հայերը

Ուրֆայի «Միլլի Կազէթա» թերթին համաձայն, ֆրանսական իշխանութիւնը ձերբակալած է Շահին Պէյզատէ Շիւքրին, Շիհանլը աշիրէթէն Ապտօն եւ չորս արբանեակները, եւ բոլորը Հալէպ աքսորած։ 150նոց Թուրքերուն ալ ազդարարած է Թուրքիոյ դէմ ոեւէ շարժում չփորձել, եթէ չեն ուզեր վտարուիլ երկրէն։

Մարտինէն ալ կը հաղորդեն «Ճումհուրիէթ»ի թէ ձերբակալուելով Տէր-Զօր աքսորուած է «հայկ. քօմիթէ»ի՞ անդամներէն տոքթ. Թորոս Պասմաճեան, որ Մարտինի սահմանին վրայ ժողովուրդը կը գրգռէր։

## Իրան կը զօրացնէ օդանաւատորմիղը

ԼՈՆՏՈՆ։ 8 սեպտ.— Թէհրանէն «Թայմզ»ի թղթակիցը կը տեղեկացնէ.—

Պարսիկ կառավարութիւնը հրաւէր ուղղեց բազմաթիւ պետութիւններու, որ դէպի հոկտեմբերի սկիզբները օդանաւեր ղրկեն Պարսկաստան, թոյլ տալու համար, որ օդանաւերու կարեւոր ապսպրանքի մը առթիւ, կարենայ ընտրութիւն կատարել։ Պարսկաստան կ'ուզէ իր զինուորական օդանաւային տորմիղը զօրացնել։

Իրաքի անգլիական զօրաբաժինը պիտի ղրկէ 4 օդանաւեր։ Կը կարծուի թէ ֆրանսական եւ իտալական օդանաւային գործարաններ եւս պիտի ղրկեն օդանաւեր։

## Մոսկուա ռազմափորձի տակ

Բոլշեւիկեան թերթ մը նկարագրութիւնը կուտայ թունաւոր կազով յարձակման մը ռազմափորձին, որուն ենթարկուեցաւ Մոսկուա։

Զօրս հազար հոգի մասնակցեցան ռազմափորձին։ Քաղքին գործարաններուն սուլիչները ժողովուրդին յայտնեցին թէ թունաւոր կազի ռումբերով բեռնաւոր վեց սաւառնակներ կը մօտենան։ Անմիջապէս պաշտպանութեան թնդանօթները բացին սաստիկ կրակ մը։ Հակառակ ասոր սակայն, սաւառնակները յաջողեցան ռումբեր նետել նշանակուած գետնին վրայ։

Քաղաքացիներուն տրուած էր յատուկ դիմակներ եւ բոլորն ալ քաշուեցան օդային յարձակման դէմ պատրաստուած մասնաւոր ապաստաններ։ Ամբողջ գետինը որ նշանակուած էր իբրեւ յարձակման վայր, ծածկուած էր թանձր մառախուղով մը։

## Ազգերու Դաշնակցութիւնը

Երէկ կէս օրէն առաջ, Ժընեւի մէջ բացուեցաւ Ազգերու Դաշնակցութեան Նստաշրջանը, իսկ կէս օրէն յետոյ, Եւրոպայի Միացեալ-Նահանգներու խորհրդակցական ժողովը, որ լսեց Ֆրանսայի արտաքին Նախարար՝ Պրիանի զեկոյցը կատարուած աշխատանքներու եւ իր յիշատակագրին տրուած պատասխաններուն մասին։

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ԿՌԻՒ ՀԱՄՊՈՒՐԿԻ ՄԷՋ.— Համպուրկի մէջ առջի գիշեր արիւնահեղ բախումներ տեղի ունեցան համայնավարներու եւ ազգայնականներու միջեւ։ Երկու կողմերը քաղքին փողոցներուն մէջ, զիրար հալածեցին դանակներով ու կոփամարտի գործիքներով։ Ազգայնական մը սպաննուեցաւ։ Ուրիշ տասը հոգիներ եւս ծանրօրէն վիրաւորուեցան։

ՊԱՏԵՐԱԶՄԵԱՆ ՄՆԱՑՈՐԴՆԵՐ.— 1915ին եւ 1916ին, ընդհ. պատերազմի ընթացքին, Ռուսերու կողմէ գերի բռնուած գերման զինուորներէն 620 հոգի, նոր վերադարձան իրենց հայրենիքը, առջի օր, մասնաւոր կառախումբով։ Այս պատերազմական գերիները, որոնք Սիպերիա եւ Թուրքիստան կը բնակէին, ստիպուեցան Գերմանիա վերադառնալ, Ռուսիոյ մէջ տիրող նիւթական վատ պայմաններուն բերումով։

ԱՐԺԱՆԹԻՆԻ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆԸ.— Արժանթին եւս, յեղափոխական շրջան մը կը բոլորէ այս միջոցիս։ Քաղաքներու մէջ տեղի ունեցած կռիւներու ընթացքին, մօտ 1000 անձեր սպաննուած կամ վիրաւորուած են։ Արժանթինի նախագահը Իրիկոյէն, գիշերանց փախաւ Լա Փլաթա, ուր ապաստանեցաւ զօրանոց մը եւ անկէ ղրկեց իր հրաժարականը։ Աժամեայ կառավարութիւն մը հաստատուեցաւ զօրավարի մը գլխաւորութեամբ, որ լուծեց Խորհրդարանը։



Հ. Յ. Դ.

Գ Ա Ի Ա Ռ

ԼԻՈՆԻ Կայծակ խումբի ժողովը վաղը իրիկուն ժամը 8.30ին, Գրադարանին մէջ։



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Զ. Ե. Ո. Միութեան Լիոնի մասնաճիւղը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր անդամները վաղը իրիկուն ժամը 8ին Միութեան համաքատեղին, 181 Cours Lafayette։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։ Կարեւոր օրակարգ։



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Կարօ Կարպուշեան որ կը բնակէր 20 rue des Feuillauts, Marseille. Իմացնել՝ «Յառաջ»ի վարչութեան։

— Կը փնտռուի Ֆնտրճաքցի Օր. Կիւրճի Իսրայէլեան, մօր անուն՝ Դամամ, հօր անուն Փանոս քոյրերը Ովսաննա, Հռիփսիմէ, Մարթա, եղբայրները Դանիէլ, Յովհաննէս։ 12 տարի առաջ անյայտացած է Համայի (Սուրիա) կողմերը։ Կը կարծուի թէ այժմ կը գտնուի Պոլիս։ Ճշգրիտ լուր տուողին 200 ֆր. նուէր։ Իմացնել՝ Toros Israélianի, Traverse Chevalier No. 20, St. Loup, Grand Pins. Marseille.

— Ամերիկայէն Ճիվան Էրքէլէթեան կը փնտռէ իր եղբայրը Պետրոս Էրքէլէթեան որ կը գտնուի Փարիզ կամ շրջակաները։ Իմացնել Յառաջի վարչութեան։

— Կը փնտռուի Արաբկիրցի Եղիա Գազանճեան իր եղբօր Նազարէթ Գազանճեանի եւ իր քեռորդիները Հայկ եւ Արամ Տէմիրճեանի կողմէ։ 1924ին Եղիա կը գտնուէր Պուքրէշ (Ռումանիա)։ Կը խնդրուի իմացնել՝ A. Demirdjianի 120 bld Jean Jaurès, Boulogne s)Seinc France, կամ H. Demirdjianի 2 Georges Dupré St-Etienne (Loire) France. Կը խնդրուի արտասահմանեան թերթերէ արտատպել։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN






## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ ԱՐԺԱՆԹԷՕՅԻ ԱՆՏԱՌԻՆ ՄԷՋ

*«Սահակ - Մեսրոպ» Գրադարանին կողմէ*

*Այսօր կիրակի առաւօտէն մինչեւ իրիկուն*

Հաղորդակցութեան միջոցներ.— փորթ տը քլիշիէն հանրակառք թիւ 40, փորթ Շամփէրէէն՝ թիւ 64, շոգեկառք՝ Սէն Լազարի կայարանէն, իջնել կառ Արժանթէօյ ուր առաջնորդներ կը սպասեն:

**Կ'ուզուին** *ժեռօէ եւ բուրղէ ոռպ կարող լաւ գործաւորուհիներ: Լաւ վճարում: Դիմել՝ Օր. Զապէլ,* 40 Rue de la Mare, *մէթրօ* Couronnes.

**Սպասուհի կ'ուզուի**

Դիմել մինչեւ կէսօր Տէր-Օհանեանց բնակարանը 128 Ave. du Roule, Neuilly,

EMPIRE Միւզիք-Հօլ՝ 37 Av. Wagram

## ՄԱՍՆԱԳԷՏ ԲԺԻՇԿՆԵՐ

96 r. Rivoli, *մէթ. Շաթլէ: Արմատ. եւ նոր մեթոտով դարմանում արանց եւ կանանց մորթի, արիւնի եւ վեներ. հիւանդութեանց (ֆրանկախտ, ջերմամիզ.) եւ վարիսի: Մասն. լապօռաթուառ: Խղճամիտ եւ արագ խորհրդացկութ. ամէն օր* 9—12, 2—8 *Կիրակի* 9—12,

*ՆՊԱՐԵՂԷՆԻ ընկերութիւն մը կ'ուզէ հայ յաճախորդներու համար կին մը կամ ընտանիք մը որ պիտի վարէ գինիի, նպարեղէնի լաւ մթերանոց մը: Լաւ բնակարան: Գործը ցոյց պիտի տրուի: Դիմել* Etabl. Tourret 13 Bld. Beaumarchais, *Փարիզ, մէթրօ* Bastille,

*ԱԿՌԱՆԵՐՈՒ դարմանում Բ. ճառագայթներու քննութեամբ: Առանց քիմքի եւ ճանկի ատամնաշարներ: Ոսկի եւ ճերմակ ակռաներ: Չափաւոր գին, խորհրդակց. վիրաբոյժ-ատամնաբուժի ժ.* 2—8, *Կիրակի* 9—12, *Դիմել՝* 52 Rue de Bondy, Mêtro République, Lancry, St. Denis.

ԱՏԱՄՆԱԲՈՅԺ — ԲԺԻՇԿ
ՓԱՐԻԶԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԷՆ

*Առանց ցաւի կը քաշէ եւ կը դարմանէ ակռաները: Ոսկիէ ատամնաշար, ոսկորէ ակռաներ: Չափաւոր գին: Խորհրդակցութիւն ամէն օր ժամը 9էն 8:* 3 Bld. Bélville, Métro Mélnimontant.

## ՀՈՂԱԲԱԺԻՆՆԵՐ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱԿԱՆԵՐԸ ԱՄՍԱՎՃԱՐՆԵՐՈՎ:

Շոգեկառքով կամ հանրակառքով 15 — 30 վայրկեան, ջուր, կազ, ելեկտրականութիւն: Ամսավճար՝ սկսեալ 200 ֆրանք, տուներու կառուցում, վճարման մեծ դիւրութիւններ. 15–20 տարուան մէջ: 15 տարի տուները ազատ են տուրքէ, պարտէզ, բաստի villaներ, նոր բնակարաններ գնելու կամ վարձելու համար, ամէն տեսակ գործողութիւններ, կալուածներու առ ու ծախ, գրաւ դնելու, ապահովագրութեան եւայլն:

*ԲԱՑԱՌԻԿ ՊԱՏԵՀՈՒԹԻՒՆ:* Սկսուած է նոր հողաբաժիններու վաճառումը, Versaillesի մօտ Bois d'Arsyի մէջ շրջապատուած գեղեցիկ անտառով: Հաղորդակցութիւնը փարիզէն Gare Mont Parnasseէն ուղղակի, իսկ Gard Invalideէն եւ St. Lazareէն Versaillesի գիծով: Տեսնել կարելի է ամէն օր ինքնաշարժով՝ ձրի: Մանրամասնութիւններու համար դիմել

**ՏԱՐԱՍՈՎ ՏԷՐ ԱԲՐԱՀԱՄԵԱՆ**

գրասենեակը, 18 Rue Chaussé d'Antin, Métro Opéra և Chaussé d'Aantin, ամէն օր ժամը 10—12 առաւօտները եւ 4—7 կէսօրէ վերջ, կիրակի եւ տօն օրեր ժամը 10—1: Հեռախօս Provence 87—32 եւ 82—48:

Տուներու շինութեան համար ձրի խորհրդակցութիւն մասնաւոր ճարտարագէտի մը կողմէ Գշ. եւ Եբ. օրերը ժամը 4-

## ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏՐԱՄԱԹԻՔ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ

7րդ տարի — ղեկավար՝ Տ. ՆՇԱՆԵԱՆ — *116*րդ ներկայացում



ՏԻԿԻՆ ՍԻՐՈՒՇԻ ՆՇԱՆԵԱՆ
Մօննա-Վաննայի դերին մէջ

**ԹԱՏՐՈՆ ALBERT Ier 64 RUE DU ROCHER**

Բացում 7րդ Թատերաշրջանի

5 ՀՈԿՏԵՄԲԵՐ ԿԻՐԱԿԻ — ՑԵՐԵԿՈՅԹ - ԵՐԵԿՈՅԹ

Ի պատիւ դերասանուհի

**ՏԻԿԻՆ ՍԻՐՈՒՇԻ ՆՇԱՆԵԱՆԻ**

Ա. անգամ ըլլալով պիտի ներկայացուի Մ. ՄԷԹԷՐԼԻՆԿԻ

# ՄՕՆՆԱ-ՎԱՆՆԱ

Պատմական հռչակաւոր թատերախաղը *(3 արար)*

Բեմադրութիւն եւ թարգմանութիւն Տ. ՆՇԱՆԵԱՆԻ

*Կը մասնակցին՝ Փարիզահայ բեմի լաւագոյն ուժերէն՝ ՏԻԿԻՆ ՍԻՐՈՒՇԻ ՆՇԱՆԵԱՆ (Մօննա-Վաննա), Ա. ԳՄԲԷԹԵԱՆ (Կիտօ), ՏՐԴԱՏ ՆՇԱՆԵԱՆ (Մառքօ), Շ. ՍԱՐԵԱՆ (Բրէնզիվալ), եւն.:*

ՑԵՐԵԿՈՅԹ ԺԱՄԸ 15ԻՆ — ԵՐԵԿՈՅԹ ԺԱՄԸ 20.30ԻՆ

(երեկոյթը կ'աւարտի ճիշդ ժամը 23.30ին)

*ԱՆՕՐԻՆԱԿ ԲԵՄԱԴՐՈՒԹԻՒՆ — 30 ՀՈԳԻ ԲԵՄԻ ՎՐԱՅ — ՃՈԽ ՏԷՔՈՐ ԵՒ ՀԱԳՈՒՍՏ*

*(Գիները սովորական)* — *Անպայման փնտռեցէք ճոխ յայտագիրը*

*Տոմսերը կը ծախուին Հրանտ-Սամուէլ գրատունը* 51 Rue Mr. le Prince. *Ճաշարան Լիլա,* 23 Rue St. Lazare *եւ ճաշարան Պլորիա* 61 Rue Mr. le Prince. *իսկ Կիրակի տոմսերը ներկայացման գիշերը սրահին:*



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris
Le Gérant H. STEPHAN

որոնք կը կրեն «Քիւրտիստանի ինքնապաշտպանութեան ընկերութիւն» ստորագրութիւնը։

Յայտարարութիւնը, կ'ըսէ «Սօն Փօսթա», կարգ մը բարբանջանքներ ընելէ յետոյ, կը յայտնէ, «մենք չենք ըսեր ճակատ գացէք եւ կռուեցէք, այլ միայն դրամ տուէք մեզի»։

Ոստիկանութիւնը ձերբակալած է յայտարարութիւնը փակցնողները։

## Պուլանըգի կռիւները

«Էլ Աճվալ»ի Պոլսոյ սեփական թղթակցին տուած տեղեկութեանց համաձայն, Օգոստոս 24ին, Արարատի արեւմտեան մասին մէջ, Զէնկէլ գիւղին մէջ գտնուող Թրքական 3րդ զօրագունդին վրայ 200 քիւրտ ապստամբներ յարձակում գործած եւ մեծ կորուստ մը պատճառած են Թիւրք զինուորներուն։ Կռիւը երկարատեւ եղած է, մինչեւ որ նոր Թրքական ուժեր եկած եւ կրցած են փախցնել Քիւրտերը, որոնք մտած են պարսկական սահմանէն ներս։

Միեւնոյն օրը, գիշեր ատեն, ապստամբները նորէն յարձակած են Զէնկէլ գիւղին վրայ եւ բուռն կռիւ մը ունեցած Թիւրք ուժերու հետ։ Երկուստեք մեծ կորուստներ տրուած են։

Պուլանըգի մէջ ստեղծուած ճակատը միշտ շարժումներ կը յառաջացնէ։ Օգոստոս 25ին գիշերը, 150 հոգինոց քիւրտ ապստամբներ յարձակում գործեցին Պուլանըգի պահականոցին վրայ եւ հոն գտնուող գումարտակ մը Թիւրք ձիաւորները ամբողջութեամբ մեռցուցին եւ փախան։

## Թրքական գիւղ մը գրաւուած

«Էլ Պայրագ»ի մէջ կը կարդանք.

Հակառակ Թրք. պաշտօնական յայտարարութեան, որով կը տեղեկացուէր որ այլեւս սուրիական սահմանէն ոեւէ յարձակում չկայ դէպի Թուրքիա եւ թէ միայն մէկ անգամ նման դէպք մը պատահած է, կը շարունակուին յարձակումները։ Անցած ամսու 10ին, 15ին եւ 20ին յարձակումներ եղած էին։

Այժմ կը տեղեկանանք որ օգոստոս 22ին, Նըսէպինի կողմէն խումբ մը արշաւած է Փայամը գիւղին վրայ եւ զայն գրաւած։ Սակայն Քիւրտերու այս յաղթանակը երկարատեւ չէ եղած. նոր Թրքական ուժեր հասած են եւ վերագրաւած գիւղը։ Երկուստեք ծանր կորուստներ եղած են։
Միեւնոյն իրիկունը, հիւսիսային Սուրիոյ սահմաններէն ուրիշ խումբ մը Սըրուճէն դէպի ներսերը յառաջացած եւ զօրաւոր բաղխումներ ունեցած է Թիւրք ուժերուն հետ։

## Քիւրտերը Իրաքի մէջ

«Թայմզ»ի Պաղտատի թղթակիցը կը հեռագրէ սեպտ.11ին։

Սիւլէյմանիէյի քրտական ցոյցին մասնակցած են 2000 Քիւրտեր, զինուած ատրճանակներով եւ դաշոյններով, որոնք հաւաքուած են կառավարութեան շէնքին առջեւ, կոչելով, «անկցին ընտրութիւնները»։ Քիւրտերը յայտարարած են ազատ ընտրութիւններն անկարելի են Իրաքի քրտական նահանգներուն մէջ։ Ոստիկանական ուժը պակաս նկատուելով, կառավարութիւնը ստիպուած է զօրքի օգնութեան դիմել, որ կրակ բացած է ցուցարարներուն վրայ։ Իր քիւրտ ազգայնականներ ձերբակալուելով ղրկուած են Պէրքիւք։

## Ազգերու Դաշնակցութիւնը եւ Համեւրոպա

Ազգերու Դաշնակցութեան մէջ, Համեւրոպայի մասին ընդհ. վիճաբանութիւնները որոշուած է փակել այսօր։ Բանաձեւերը պիտի ներկայացուին ընդհ. վիճաբանութեանց փակումէն առաջ, եւ փոխանակ հարցին մանրամասն ուսումնասիրութիւնը ղրկելու քաղաքական յանձնախումբին, ձգտում կայ գտնելու անգլեւֆրանսական միացեալ բանաձեւ մը, որ ժողովէն պահանջէ անմիջապէս նշանակելու ուսումնասիրական յատուկ յանձնախումբ մը։

## Գերմանիոյ ընտրութիւնները

Ամբողջ աշխարհ մանաւոր ուշադրութեամբ հետեւեցաւ Գերմանիոյ խորհրդարանական ընտրութիւններուն, որոնց արդիւնքէն շատ բան կախուած է Գերմանիոյ քաղաքական բախտին եւ թէ ընդհ. խաղաղութեան ամրացման տեսակէտէն։

Ամբողջ Գերմանիա, կիրակի օրն ի բուն ոտքի էր եւ բացառիկ ոգեւորութիւն կը տիրէր մանաւորաբար բանուորական թաղերու քուէարկութեան դիւաններուն մէջ։

Ընտրութիւնները մանաւանդ աննպաստ են վարչապետին՝ Պրիւնինկի, որ եթէ վերջին պահու ճարպիկութեամբ մը եւ քաղաքական դէպքերու օժանդակութեամբ չյաջողի իր դիրքը ամրացնել, կատարեալ պարտութեան պիտի մատնուի։

Կեդրոնի կաթոլիկ կուսակցութիւնը կը պահէ իր դիրքը, բայց քաղքենի միացեալ կազմակերպութիւնները բաւական աթոռ կորսնցուցած են։

Ժողովրդականները զգալի չափով նուազած են։

Հիւկէնպէրկի խումբը պարտուած է ինչպէս կը յուսար վարչապետը, բայց անոր պարտութիւնը որ եւ է օգուտ չի բերեր քաղքենի կազմակերպութեանց։ Հիթլէրի ցեղապաշտներն են որ ի վնաս Հիւկէնպէրկի եւ կեդրոնի մեծ առաւելութիւններ ձեռք ձգած են։

Համայնավարները պահելով մէկտեղ իրենց դիրքերը, չյաջողեցան նուազեցնել ընկերվարականները, որոնք կը պահեն իրենց նախկին ուժը, աւելի ամրացած։

Քուէարկութեան մասնակցելու իրաւունք ունէին 43 միլիոն հոգի։ Ցարդ, ստուգուած քուէներու թիւն է 35 միլիոն 790,340, որոնք կը բաժնուին հետեւեալ կերպով.— Ընկերվարականներ 8 միլիոն, 536929,— Ազգայնականներ՝ 2 միլիոն, 459996,— կեդրոն՝ 4 միլիոն 549795,— Համայնավարներ՝ 4 միլիոն, 599375,— Ժողովրդավարներ՝ 1 միլիոն 966015,— կառավարականներ՝ 1 միլ. 186717,— Տնտեսավարներ՝ 1 միլ. 352341.— Պավարիոյ ժողովրդավարներ՝ 1 միլ. 118,556,— Ազգ. ընկերվարականներ՝ 6 միլ. 375,259,— Երկրագործականներ՝ 1 միլ. 103,889,— զանազան մանր խմբակցութիւններ՝ 2 միլ. 511,468։ Համաձայն քուէներու ցուցմունքին, խորհրդարանը պիտի ունենայ մօտաւորապէս հետեւեալ կազմը.— Ընկերվարականներ՝ 143,— Ազգ. ընկերվարականներ (Հիթլէր) 107, կեդրոն՝ 69,— Համայնավար՝ 76,— Ազգայնական՝ 41,— Ժողովրդ. 26,— Տնտեսավարներ՝ 23,— կառավարական՝ 23,— Պավարեցիներ՝ 18,— Երկրագործական՝ 16,— Զանազանք՝ 41։



## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ
ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ Շրջ. կոմիտէն կը հրաւիրէ հետեւեալ ընկերները 19 սեպտ. Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, Գրադարանի սրահը։ Ալիքսան Սատոյեան, Գուրգէն Յովհաննէսեան, Զաւէն Վահրամեան, Գէորգ Գալֆայեան, Վահրամ Սէֆէրեան, Յարութիւն Նիկողոսեան, Յովհ. Տէր-Պետրոսեան, Հրաչ Վարդանեան, Նիկողոս Թանտըեան, Տօնիկ Յովհաննէսեան, Մովսէս Սէտէֆեան, Մելիք Գէորգեան, Մարի Աճէմեան։

ԼԻՈՆԻ շրջ. ներկայացուցչական ժողովը տեղի կ'ունենայ 27 սեպտ. Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը, 262 rue Duguesclin, Lyon.

Պ. Պ. Գէորգ եւ Վահրամ Մասլաքեան եղբայրներէ կը խնդրուի իրենց ներկայ հասցէն իմացնել Պ. Վ. Ժամկոչեանի, 211 Rue Créqui, Lyon.

Հ. Յ. Դ. Լիոնի Պատ. Միութեան Ժողովրդային Գրադարանը բաց է, Բշ. Դշ. Եշ. եւ Ուրբաթ երեկոները ժամը 7—8.30։




EMPIRE Միւզիք-Հօլ՝ 37 Av. Wagram

MPRIMERIE - MASSIS -ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

տեմբեր 13ին, երբ լրացած ըլլան խորհրդարանի շէնքին կարգ մը անհրաժեշտ նորոգութիւնները, տեղ պատրաստելու համար 80 նոր երեսփոխաններու։

## Հնդկաստանի դէպքերը

Հնդկաստանի ազգայնական խռովութիւններն ատինձանաբար մեղմանալու վրայ են։ Սակայն Պոմպէյէն տրուած լուրերու համաձայն, նոր խռովութիւններ են պատահած Հակփուրի շրջանին մէջ։ Ոստիկանութիւնը որ ալքօլի մթերանոցի մը վրայ կը հսկէր, յարձակում կրեց երեք հազար հոգիներու կողմէ։ Կառավարիչը խռովութեան վայրը հասաւ օգնական ուժերով, բայց ամբոխը զայն դիմաւորեց քարերով։ Ոստիկանութիւնը ստիպուեցաւ յարձակում գործել իր կարգին ու վիրաւորեց 7 անձեր։

Միւս կողմէ, Փէնճապի մէջ երեւան հանուեցաւ ահաբեկիչներու դաւադրութիւն մը։ Տեղացիներու կողմէ պատրաստուած ձեռնառումբեր գտնուեցան գետակի մը խորը։ Քննութեան հետեւանքով, քանի մը անձեր ձերբակալուեցան։

## Վարշաւիա կ'արիւնոտի

Հինգ կուսակցութիւններու նախաձեռնութեամբ հրապարակային հաւաքոյթ մը կազմուեցաւ Վարշաւիոյ մէջ։ Ցաջորդաբար խօսք առին ընդդիմադիր պետերը։ Հաւաքոյթը անցաւ խաղաղ ու վերջացաւ կառավարութեան դէմ՝ բողոքի բանաձեւի մը քուէարկութեամբ։

Ներկաներէն մաս մը թափօր կազմած քաղաքին գլխաւոր պողոտաներուն վրայ ցոյցեր կատարելու ելաւ. բայց ոստիկանութիւնը փորձեց ցրուել ցուցարարները։ Այդ միջոցին անծանօթներ ձեռնառումբ մը նետեցին եւ ատրճանակ պարպեցին։ Մէկ մեռեալ եւ 15 վիրաւորներ կան, 5ը ոստիկան։ 100ի չափ ձերբակալութիւններ կատարուեցան։

⁂ Քանի չափ ընդդիմադիր երեսփոխաններու ձերբակալման մասին, մարաջախտ Փիլսուտսքի թերթերուն տուած է յայտարարութիւն մը, որով կը յայտնէ թէ հազիւ քառորդը իրականացած է նախատեսուած ձերբակալումներուն, այն պատճառաւ որ ոստիկանութիւնը չափազանց զբաղած էր յառաջիկայ ընտրութեանց պատրաստութիւններով։

## Պուէնոս-Այրէսի մէջ ռուս բոլշեւիկներ

Ոստիկանութիւնը ձերբակալեց 38 Ռուսեր որոնք կը պատկանէին բոլշեւիկեան կազմակերպութեան մը։

Այս ձերբակալութիւնները կատարուած են համայնավարներու կողմէ հրատարակած բազմաթիւ հեգնական թռուցիկներու պատճառով, որոնք վիրաւորական ակնարկութիւններ կը պարունակէին Արժանթինի նոր կառավարութեան պետին զօր. Ուրիփուրիի դէմ։

## Ազգերու Դաշնակցութիւնը եւ Համեւրոպա

Համեւրոպայի կազմութեան շուրջ, Ժընեւի պատուիրակութիւնները կը շարունակեն իրենց խորհրդակցութիւնները, գտնելու համար եղանակ մը, որով կարելի ըլլայ ծրագրին իրականացումը ապահովել։ Անգլիոյ եւ Ֆրանսայի արտաքին նախարարները համաձայնեցան բանաձեւի մը շուրջ, որ պիտի ներկայացուի Ազգերու Խորհուրդին։ Այս բանաձեւին համաձայն, Համեւրոպայի ծրագրին քննութիւնը պիտի յանձնուի ո՛չ թէ յատուկ ուսումնասիրական յանձնախումբի մը, այլ եւրոպական խորհրդաժողովին, որ բաղկացած է եւրոպական 27 պետութեանց ներկայացուցիչներէն։ Այս խորհրդաժողովը իրաւունք պիտի ունենայ ինքն իսկ նշանակելու անհրաժեշտ յանձնախումբերը։

Այս իմաստով ալ, երէկ խօսեցաւ Եուկօսլաւիոյ արտաքին նախարարը, Մարինքովիչ, որ ըսաւ.— Եթէ այս գաղափարը չպիտի իրականայ, եթէ այս կազմակերպութիւնը գլուխ չպիտի ելլէ, պէտք չէ որ յանցանքը իյնայ Ամերիկացիներուն կամ Ասիացիներուն վրայ։ Պէտք է ամէն մարդ գիտնայ որ մենք, Եւրոպացիներս ենք որ չուզեցինք եւ կամ չկրցանք իրականացնել»։

Պ. Մարինքովիչէն յետոյ, խօսք առաւ Յունաստանի ներկայացուցիչը Պ. Փոլիթիս, որ ըսաւ.— Եւրոպայի դաշնակցութիւնը իր սկիզբները պէտք է ըլլայ չափաւոր եւ խոհուն։ Դաշնակցային կազմակերպութիւն մը մէկէն ի մէկ չիրականանար։

«Այսվէճերէն յետոյ պէտք է ստեղծուի ուսումնասիրական յանձնախումբ մը, որ նկատի պէտք է ունենայ հարցին բոլոր տարրերը, որպէսզի եւրոպական բոլոր պետութիւնները կարենան իրենց մասնակցութիւնը բերել։ Շարք մը հարցեր կան, իրաւական, տնտեսական, որոնց շուրջ տեղական, սահմանափակ համաձայնութիւնները կարելի է վերցնել, տեղ տալու համար միակ պայմանադրութեան մը։

Այս կերպով կարելի պիտի ըլլար ստեղծել եւրոպական մտայնութիւն մը, որ երբ սկզբնաւորութիւն արդէն, երեւան կուգայ Աթէնքի մէջ բացուելիք Պալքանեան պետութեանց յառաջիկայ խորհրդաժողովով։ Եւրոպա կը գտնուի քառուղիի մը բերանը։ Պէտք է որ ընտրէ։ Կացութեան վրայ խորհելու եւ ըստ այնմ գործելու ժամը հնչած է»։

Ուրիշ բազմաթիւ ճառախօսներ եւս արձանագրուած են։















ՕՐ. ՎԱՐԴԱՆՈՒՇ ԱՐՄԷՆԵԱՆ
ԵՒ
ԱԼԵՔՍԱՆ ԹՈՐՈՍԵԱՆ
Ամուսնացած
Բլամօռ 13 Սեպտ. 1930

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ԱՆԻԷՌ-ՊՈՒԱ-ՔՈԼՈՆՊԻ Փոթորիկ խումբի ժողովը այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին 33 Rue Emile Zola սրահին մէջ։ Կարեւոր օրակարգ։

ՇԱՎԻԼԻ Արդութեան ենթակոմիտէի ժողովը այս Կիրակի ժամը 4ին, Մոնփարնասի կայարանին դէմի սրճարանը։ Ձեկոյց շրջ. ժողովի մասին։

ԳԱՒԱՌ

ՄԱՐՍԷՅԼԻ Ռոստոմ ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ իր ընկերները այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։

ԼԻՈՆԻ շրջ. ներկայացուցչական ժողովը տեղի կ'ունենայ 27 սեպտ. շաբաթ իրիկուն ժամը 8.30ին գրադարանի սրահը, 262 rue Duguesclin, Lyon.

Պ. Պ. Գէորգ եւ Վահրամ Մասլաքեան եղբայրներէ կը խնդրուի իրենց ներկայ հասցէն իմացնել Պ. Վ. Ժամկոչեանի, 211 Rue Créqui, Lyon.

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՈՒՐՖԱՅԻ Հայրենակցական միութեան ժողովը այս Ուրբաթ իրիկուն ժամը 9ին, Լա Փըթիթ Սուրսի մէջ։ Մէթրօ՝ Օտէօն։

Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի մասնաճիւղին դաստիարակչական ժողովը վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին Ֆլորիայի մէջ։ Օհան Կարօ կը խօսի՝ ճշմարիտ Հայերու անելիքը։ Մէկ ժամ սինէմա։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Օսմանլեան ընտանիքը շնորհակալութիւն կը յայտնէ ամէն անոնց որոնք անձամբ կամ գրաւոր իրենց ցաւակցութիւնը յայտնեցին ԹՈՐՈՍ ՕՍՄԱՆԼԵԱՆի դառնաղէտ մահուան առթիւ։

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Լա Սէյն Սիւրմէր, Կ. Ա.— 36։
Նիկոսիա, Ն. Ա.— 1 անգլ.։
Վիվիէ, Ա. Ա.— 35։
Ռէշտ, Զ. Վ.— 120 ֆր.։ Կարգադրեցինք։
Լիոն, Գործ.— 1094.60։
Պուքրէշ, Գործ.— 1050։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Կարօ Կարպուշեան որ կը բնակէր 20 rue des Feuillants, Marseille. Իմացնել՝ «Յառաջ»ի վարչութեան։

— Պօլսեցի Երուանդ Փափազեան կը փնտռէ իր կինը Սիրանուշ Սանճագճեան եւ աղջիկը Շաքէ (երեքուկէս տարեկան)։ 40 օր առաջ Սիրանուշ հեռացած է տունէն։ Իր հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել իր ամուսնոյն Ե. Փափազեանի 119 Rue Duguescltn, Lyon Rhône. Լուր տուողին նուէր։























IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H. STEPHAN

ամէն տեսակ միջոցներու մասին մտածած են: Այս նպատակով, Հիդլէրեաններ որոնց կեդրոնը Միւնիխ կը գտնուի, պիտի փոխադրուի Պերլին: Կուսակցութեան յարձակողական ուժերը եռանդով կը զօրացուին: Գերման բանակի կարգ մը սպաներ, իբր թէ այս նպատակով, խնդրած են հանգստեան կոչուիլ, գործելու համար Հիդլէրի հրամանին տակ:

Միւնիխի առեն, Հիդլէրեանները պնդելով որ Խորհրդարանի մէջ կը կազմեն ամէնէն ուժեղ կուսակցութիւններէն մէկը, պիտի փորձեն ձեռք անցընել ոստիկանութիւնը, պատերազմական նախարարութիւնը եւ գլխաւոր վարչութիւնները: Եւ երբ վայրկեանը հասած նկատուի, տնտեսական տագնապն ու անգործներու թշուառութիւնը պատրուակելով, Հիդլէր պիտի փորձէ — հաւանաբար այս ձմրան — պետական հարուած մը երեւան բերել եւ գրաւել կառավարութիւնը:

## Նոր կռիւներ Պոմպէյի մէջ

Պոմպէյի Օրէնսդիր Ժողովին ընտրութիւններուն առթիւ, հնդիկ ազգայնականները փորձեցին խափանել քուէարկութիւնները: Ոստիկանութիւնը ստիպուեցաւ միջամտել եւ յարձակում գործել ամբոխին վրայ: Յարձակումներու ընթացքին վիրաւորուած են մօտ 250 անձեր: Ձերբակալուած են նաեւ 328 հոգի, որոնց 315ը կիներ են:

Կալկաթայի դատարանը ցկեանս աքսորի դատապարտեց Պէնկալի ոստիկանապետին վրայ մահափորձ կատարող հնդիկը: Նոյն պատժին ենթարկուեցաւ նաեւ 18 տարու հնդիկ մը, որ անգլիացի մը սպաննած էր:

## Ամերիկա կը պահանջէ Գերմանիայէն

Երէկ առաջին անգամ ըլլալով, Լահէյի Խաղաղութեան Պալատին մէջ նիստ գումարեց գերմանեւամերիկեան յանձնախումբը, որ պիտի քննէ Գերմանիոյ եւ Ամերիկայի միջեւ ծագած վէճ մը: Վէճին տուն տուող պատճառն է 1916ին եւ 1917ին Ամերիկայի մէջ տեղի ունեցած ռազմանիւթերու պայթումը, զոր Ամերիկա կը վերագրէ գերման լրտեսներու եւ Գերմաններէն կը պահանջէ 40 միլիոն տոլար:















## ԵՒՐՈՊԱՅԻ ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷՆ ՍՏԻՊՈՂԱԲԱՐ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ

կը հրաւիրէ Ռոստոմ, Քրիստափոր, Հրազդան, Աղբիւր Սերոբ եւ Արծիւ խումբերու բոլոր ընկերները այս Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Քաֆէ օ Քլէռ տը Լիւնի վերնայարկը, մէթրօ՝ Իթալի: Խիստ կարեւոր օրակարգ: Ջեկոյց Կ. Կ.ի կողմէ: Պարտաւորիչ ներկայութիւն: Ներկայանալ անդամատոմսով:

## ԵՒՐՈՊԱՅԻ ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷՆ ԱՐՏԱԿԱՐԳ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ

կը հրաւիրէ Մարսէյլի եւ շրջանի բոլոր ընկերները վաղը կիրակի: Տեղը եւ ժամը կ'որոշուին տեղւոյն վրայ:

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Չ. Ե. Ռ. Միութեան Մարսէյլի մասնաճիւղին կողմէ, վաղը կիրակի առաւօտ ժամը 9.30ին Սալօն Էսբանեոլի մէջ:

Կը խօսին ՊՐ. ԵՆՈՎՔ ԱՐՄԷՆ եւ ՏՕՔԹ. ԳԱՐԵԳԻՆ ԱՄԱՏԵԱՆ

Մուտքը ազատ է



# Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ՇԱՎԻԼԻ Արզրումեան ենթակոմիտէի ժողովը վաղը Կիրակի ժամը 4ին, Մոնփարնասի կայարանին դէմ սրճարանը: Զեկոյց շրջ. ժողովի մասին:

ՍԱՐՍԷԼԻ Հրայր խումբի ժողովը այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8ին ընկ. Ալատինեանի բնակարանը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտադիր է: Զեկոյց Շրջ. ժողովի մասին:

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ շրջ. ներկայացուցչական ժողովը տեղի կ'ունենայ 27 սեպտ. շաբաթ իրիկուն ժամը 8.30ին գրադարանի սրահը, 262 rue Duguesclin, Lyon.

ՄԱՐՍԷՅԼԻ Իշխան ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ իր խումբերու ընկերները վաղը Կիրակի ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին: Պարտաւորիչ ներկայութիւն:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՇԱՎԻԼԻ Երկսեռ Երիտասարդաց Միութեան ընդհ. ժողովը այս իրիկուն ծանօթ հաւաքատեղին:

ԵՍԱԵԱՆ վարժարանի նախկին երկսեռ սաները ժողովի կը հրաւիրուին վաղը Կիրակի առաւօտ ժամը 10ին Ֆլորիա ճաշարանը, 61 Mr. le Prince. Կարեւոր օրակարգ:

ԱԼՖՈՐՎԻԼԻ Չէնկիլէրի հայր. միութեան բացման հանդէսը այսօր Շաբաթ իրիկուն ժամը 9ին 6 Bld. Carnot, Փիլիպոսի սրճարանին մէջ: Բանախօսութիւն, երգ եւ անակնկալներ:

Չ. Ե. Ռ. Միութեան Լիոնի մասնաճիւղի վարչութիւնը կը հրաւիրէ իր ամբողջ անդամները վաղը Կիրակի առաւօտ ճիշդ ժամը 10ին միութեան ծանօթ հաւաքատեղին:

ԼԻՈՆԻ Զարսանճագի Հայր. Միութեան մասնաճիւղին ընդհ. ժողովը վաղը Կիրակի ժամը 2ին Էմիլ Զոլայի սրահին մէջ: Կարեւոր օրակարգ: Արձանագրուիլ փափաքողներէ կը խնդրուի ներկայանալ նոյն օրը:

ՄԱՐՍԷՅԼԻ Արաբկիրի Հայր. Միութեան շահած պարգեւները. 269, 519, 497, 207, 342, 192, 388 եւ 3:



## ԸՆԿԵՐԱԸՆՏԱՆԵԿԱՆ ՀԱՑԿԵՐՈՅԹ

Կազմակերպուած Իսի-լէ Մուլինօ Պոյեանքուրի Ջաւարեան ենթակոմիտէի կողմէ, ընկեր Սուրէնեանի մեկման առթիւ: Վաղը Կիրակի իրիկունժամը 5ին 28 Rue Nationale, Նաւավարեանի ճաշարանը: Մուտք 10 ֆր.: Հաղորդակց.— Փորթ տը Վէրսայլէն եւ Օփէրայէն առնել թիւ 32 թրամուէյ եւ իջնել Փլաս Նասիոնալ:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Կարօ Կարպուշեան որ կը բնակէր 20 rue des Feuillants, Marseille. Իմացնել՝ «Յառաջ»ի վարչութեան:

— Կը փնտռեմ հօրեղբօրորդիս Յարութիւն Մուխպիրեան (Եոզկատցի) որ 1921ին կը գտնուէր Հալէպ: Անկէ ի վեր լուր չունիմ: Իր հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել Հմայեակ Մուխպիրեանի, Villa Anlis Varduron Bas, St. Antoine Marseille: Ամերիկահայ թերթերէն կը խնդրուի արտատպել:

**Գործ** կը փնտռէ հայ սպասուհի մը տնական եւ խոհանոցի աշխատանքներու համար: Դիմել Արուսեակ Թոփալեանի, 194 Fbg. St. Martin Փարիզ (10).





IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS 208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

















աւելի կանուխ յաջողած էին փախչիլ, իրենց կիներն ու զաւակները այնտեղ թողած են։

Այսպէս, Արարատի մէջ տարիներէ ի վեր գործող աւազակներու որջերը բոլորովին մաքրուած են։

## Թուրքեւհելլէն առեւտրական դաշնագիրը

Թուրքեւհելլէն առեւտրական պայմանագրութեան մը կրնքումին համար առենէ մը ի վեր բանակցութիւններ տեղի կ՚ունենան։

Հելլէն պատուիրակութիւնը մաքսային դիւրութիւններ ուզած է հելլէն գինիներու եւ քօնեաքներու համար։ Կը յուսացուի որ համաձայնութիւն պիտի գոյանայ։ Այս պայմանագրութիւնը որ նաւարկութեան վերաբերեալ տրամադրութիւններ ալ պիտի պարունակէ, պիտի կարգադրէ նաեւ երկու երկիրներու ճամբորդներուն երթեւեկի խնդիրը։

## Թուրք դահլիճին վերակազմութիւնը

Էնկիւրիէն կը հաղորդեն «Փօլիթիքա»յի.— Անհիմն է այն զրոյցը թէ դատական գործավար Մահմուտ Էսատ պէյ Վարշաւիոյ դեսպան պիտի կարգուի։ Բայց զրոյց կայ հոս որ գործավարը պիտի հրաժարի դահլիճէն։

Միւս կողմէ, Ազգ. Ժողովը բացուելուն պէս, կրթական գործավար Ճէմալ Հիւսնի պէյ պիտի հրաժարի։ Իբրեւ անոր յաջորդ, ամէնէն աւելի կը խօսուի նախկին կրթական գործավար եւ Մոսկուայի դեսպան Վասըֆ պէյի մասին։

Ամէն պարագայի տակ, Խալք կուսակցութեան շրջանակներուն մէջ յամառ զրոյց կայ թէ կարգ մը փոփոխութիւններ պիտի ըլլան Ըսմէթ փաշայի դահլիճին մէջ։

Փոխուելիք գործավարներուն մէջ չի գտնուիր ելմտական գործավար Սարաճ օղլու Շիւքրի պէյ, որ ելմտական խիստ կարեւոր խնդիրներու վրայ կ՚աշխատի եւ վստահ է որ պիտի կարենայ գլուխ հանել զանոնք։

Թէ վարչապետը եւ թէ ելմտական գործավարը զօրաւոր փաստեր ունին իրենց տրամադրութեան տակ, դահլիճին ելմտական քաղաքականութիւնը պաշտպանելու համար։

Ամէն պարագայի մէջ, առաջիկայ նստաշրջանը գործունէութեան ամէնէն ուժեղ շրջանը պիտի ըլլայ թէ՛ Ազգ. Ժողովին եւ թէ Ըսմէթ փաշայի կառավարութեան համար։

## Ըսմէթի նոր դահլիճը

Վերջին տեղեկութեանց համաձայն Էնկիւրիի քաղաքական շրջանակները կը հաւաստեն թէ Ըսմէթ փաշա, այսօր իսկ պիտի ներկայացնէ դահլիճին հրաժարականը, բայց Մուսթաֆա Քէմալ, դարձեալ Ըսմէթի պիտի յանձնէ նոր դահլիճին կազմութիւնը։ Ըսմէթ նոր կազմով պիտի ներկայանայ այս հինգշաբթի օր, Ազգ. Ժողովին։ Արտաքին, Ներքին, ելմտական, ազգ. պաշտպանութեան եւ առողջապահական նախարարները կը պահեն իրենց պաշտօնները։

Իսկ Մահմուտ Էսատի տեղ՝ դատ. նախարարը, որ խիստ քննադատութեանց ենթարկուեցաւ, պաշտօնի կ՚անցնի Եուսուֆ Քէմալ։ Հանր. Շինութեանց նախարարը Րէճէպ պիտի ստանձնէ Խալքի ընդհ. քարտուղարութիւնը։ Ազգ. տնտեսութեան գլուխը կ՚անցնի Մուսթաֆա Շէրիֆ։

## Պրիւնինկ վախ չունի Հիթլէրէն

Հազիւ մէկուկէս շաբաթ է անցած Գերմանիոյ ընտրութիւններէն, որոնց վրայ աշխարհ կը նայէր սարսափահար աչքերով, բայց արդէն, քաղաքական շրջանակները աւելի պաղարիւն կը դիտեն կացութիւնը։ Ազգ. ընկերվարականներու յաջողութիւնը գրգռեր էր երեւակայութիւնները. ծանր խռովութիւններ, քաղաքական կռիւներ կը գուշակուէին։ Իսկ այսօր, աւելի մտահոգուած են գերման պետութիւնը սահմանադրական եղանակով զօրացնելու եւ օրինաւոր ճամբաներով ամրացնելու խախտած ելեւմուտքը։

Վարչապետ Պրիւնինկ, կրկին անգամ ըլլալով յայտնեց լրագրողներուն թէ կառավարութիւնը միշտ ի վիճակի պիտի ըլլայ սաղմին մէջ իսկ փճացնելու որ եւ է խռովութիւն։ Յառաջիկայ Եշ., գերման դահլիճը նիստ պիտի գումարէ, ճշդելու համար վարչական եւ ելմտական բարեփոխութեանց ծրագրին ընդհանուր գիծերը, զորս պիտի ներկայացնէ Խորհրդարանին։

Նոյն նիստին, դահլիճը պիտի խորհրդակցի քաղաքական ուղղութիւններու մասին, որոնց հիման վրայ, զանազան կուսակցութեանց հետ պիտի վարէ բանակցութիւններ, համերաշխական խառն դահլիճի մը կազմութեան նպատակով։

## Իտալիա Ալպանիոյ մէջ

ԹԻՐԱՆԱ, 21 Սեպտ.— Հակառակ հաղորդակցութեանց միջոցներու պակասին, հիւսիսային սահմանէն եկած լուրեր կը հաստատեն թէ զօրախումբերու կարեւոր շարժումներ տեղի ունեցած են այս օրերս, Շքոտրայի շրջանին մէջ, Քանի չափ իտալացի մարզիկներ եւս նոր հասած են այս քաղաքին զինուորական մարզանքի կեդրոնը։

Գրգռութիւն կը տիրէ քաղքին մէջ, ուր արտաքին նախարարը յաճախակի տեսակցութիւններ կ՚ունենայ իտալական կառավարութեան ներկայացուցչին հետ։ Զօկու թագաւորին հիւանդութեան լուրերը կը հերքուին։ Սակայն ստոյգ է թէ քանի մը օրէ ի վեր ան փակուած կը մնայ իր պալատին մէջ եւ դուրս չելներ։

Քաղաքական ներքին կացութիւնը բաւական ծանր է. դահլիճին եւ թագաւորին եւ նոյնիսկ դահլիճին անդամներու միջեւ, անհամաձայնութիւն ծագած է կարգ մը խնդիրներու շուրջ։

## Փարիզի ռուս դեսպանին բողոքը

ՄՈՍԿՈՒԱ, 21 սեպտ.— Ֆրանսայի Խորհրդ. դեսպանը Տովկալեւսկի ֆրանսական կառավարութեան յանձնեց բողոք մը, ընդդէմ գաղթական Ռուսերու կողմէ կատարուած զօրանցքին, Անծանօթ Զինուորի Դամբանին առջեւ, (կատարուած Փարիզի մէջ սեպտ. 6ին)։ Այս զօրանցքին մասնակցողները համազգեստ, զէնքեր եւ դրօշներ կը կրէին։

Այս բողոքին ի պատասխան, Ֆրանսայի արտաքին նախարարութեան ընդհ. քարտուղարը յայտնեց ռուս դեսպանին թէ ամէն միջոցի պիտի դիմէ լուսաբանելու համար թէ ի՞նչ կերպով տեղի ունեցաւ Փարիզի ռուս գաղթականներու զօրանցքը եւ վստահեցուց թէ անհրաժեշտ հրահանգներ պիտի տրուին, որպէս զի ասկից յետոյ, նման դէպքեր չկրկնուին։

ԵԻՐՈՊԱՅԻ ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷՆ ՍՏԻՊՈՂԱԲԱՐ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ կը հրաւիրէ Ռոստոմ, Քրիստափոր, Հրազդան, Աղբիւր Սերոբ եւ Արծիւ խումբերու բոլոր ընկերները այս Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Քաֆէ օ Բլէօ տը Լիւնի վերնայարկը, մէթրօ՝ Իթալի։ Խիստ կարեւոր օրակարգ։ Զեկոյց Կ. Կ.ի կողմէ։ Պարտաւորիչ ներկայութիւն։ Ներկայանալ անդամատետրով։



## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ



### Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ԻԹԱԼԻԻ Աղբիւր-Սերոբ խումբի ժողովը, այս Շաբաթ գիշեր ժամը 8.30ին ծանօթ ժաւաքատեղին։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ շրջ. ներկայացուցչական ժողովը տեղի կ՚ունենայ 27 Սեպտ. Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը, 262 rue Duguesclin.

ԼԻՈՆԻ Քեռի խումբի ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը 3,30ին, Ճանկէօզեանի ճաշարանը. ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ։

ԼԻՈՆԻ Կայծակ խումբի ընկերները ժողովի կը հրաւիրուին վաղը Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Կարօ Կարպուշեան որ կը բնակէր 20 rue des Feuillants, Marseille. Իմացնել՝ «Յառաջ»ի վարչութեան։

— Կը փնտռեմ հօրեղբօրորդիս Յարութիւն Մուխալիբեան (Եոզկատցի) որ 1921ին կը գտնուէր Հալէպ։ Անկէ ի վեր լուր չունիմ։ Իր հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել Հմայեակ Մուխալիբեանի, Villa Anlis Varduron Bas, St. Antoine Marseille։ Ամերիկահայ թերթերէն կը խնդրուի արտատպել։



EMPIRE միւզիք-Հոլ՝ 37 Av. Wagram


IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

դաւադրութիւն մը, որ կը ձգտէր վիժեցնել ժողովուրդին պարենաւորումը:

Իբր թէ այդ կազմակերպութիւնը կը ջանար սովի մատնել երկիրը, որպէս զի ընդհանուր դժգոհութիւն գրգռելով ու զարգացնելով, ժողովուրդը մղէր ըմբոստութեան՝ ընդդէմ բոլշեւիկեան վարչաձեւին, տապալելու համար զայն: Կազմակերպութեան ղեկավարն է եղեր Փրոֆ. Ռիազանցէֆ, որուն շուրջ հաւաքուած են նախկին ազնուականներ եւ սպաներ, ցարական կառավարութեան հայթայթիչներ, հին առեւտրականներ եւ գործարանատէրներ, ինչպէս նաեւ մենշեւիկ կուսակցութեան անդամներ:

Այս կազմակերպութիւնը յարաբերութեան մէջ էր գաղթական Ռուսերու եւ օտար դրամատէրներու հետ, որոնցմէ կը ստանար դրամ եւ հրահանգ...

Ըստ «Թաս»ի տեղեկութիւններուն, իբր թէ գլխաւոր վարիչներէն Ռիազանցէֆ եւ Քարատիկին, խոստովանութիւններ ըրած են, որոնցմէ կը հասկցուի թէ անգլիական մեծ տուն մըն ալ մատ ունի գործին մէջ:

Անշուշտ, «Թաս» գործակալութիւնը բարի կ'ըլլայ քանի մը օրէն մեզ հաղորդելու գնդակահարման նոր շարք մը եւս:

## Գերմանիոյ քաղաքական տագնապը

Գերմանիոյ վարչապետը Պրիւնինկ, երէկ առտու տեսակցութիւն մը ունեցաւ Նախագահ Հինտէնպուրկի հետ, իսկ կէս օրէն յետոյ դահլիճը նիստ գումարեց, խորհրդակցելու համար վարչական եւ ելմտական բարեփոխումներու ծրագրին շուրջ, որ պիտի ներկայացնէ խորհրդարանին: Բարեփոխումներու ծրագիրը պիտի մշակուի ընդարձակ հիմերու վրայ, նկատի ունենալով ընկերային, տնտեսական ու ելմտական կացութիւնը եւ նպատակ ունենալով դարման գտնել պետական գանձին նեղ վիճակին, ելեւմուտքի յարաճուն բացին, գործատութեան ծաւալուն ընթացքին: Այս ծրագիրը կարգ մը կէտերու մէջ պիտի տարբերի Հինտէնպուրկի հրամանագրերէն եւ աւելի արմատական միջոցներ պիտի առաջարկէ:

Այս մասին, որեւէ զեկոյց չպիտի տրուի մամուլին եւ ծրագրին հիմնական կէտերը նախ պիտի ներկայացուին զանազան կուսակցութեանց պետերուն որոնց հետ, բանակցութիւններն արդէն, Պրիւնինկ պիտի սկսի այսօր, բացի Հիդլերեաններէն, որոնց հետ առ այժմ շփում ունենալ չուզեր:

Ներկայիս արդէն, դահլիճի հրաժարման խօսք չկայ: Աւելի կը մտածուի կարգ մը փոփոխութիւններ մտցնել դահլիճի կազմին մէջ:

Աջակողմեան թերթերը կը շարունակեն թելադրութիւններ ընել ի նպաստ դէպի աջ հակումի, մինչեւ իսկ ազգ. ընկերվարականներու հետ միացումով:

Սակայն, կեդրոնի կաթոլիկ կուսակցութեան թերթը պատասխանելով ընկերվարական պաշտօնաթերթինմէկ գրութեան, կ'ընդունի թէ առենը եկած է կիրարկելու բանաւոր քաղաքականութիւն մը եւ հարցերը քննելու մոռնալով կուսակցական տարակարծութիւնները: Այս յօդուածը կը մեկնաբանուի իբր փաստ մը կաթոլիկներու կողմէ՝ ընկերվարական կուսակցութեան հետ գործակցութեան փափաքին, եւ իբր հրաւէր մը այս վերջինին՝ չչափազանցելու իր պահանջները՝ ուժ տալու համար կառավարութեան:

Կը կարծուի նաեւ թէ Պրիւնինկ՝ Խորհրդարանին պիտի ներկայանայ իր արդի կազմով, եթէ դէպքերը չպարտադրեն տարբեր կարգադրութիւններ: Այդ պարագային՝ ան պիտի կռթնի ընկերվարականներու, առանց սակայն այս վերջիններու պաշտօնական գործակցութեան:

## Ֆրանսա-Պարսկաստան օդանաւով

Փարիզէն Թէհրան իրենց թռիչքի ընթացքին, ֆրանսացի օդանաւորդները Կուլէթ եւ Լալուէթ որոնք կանգ առեր էին Հալէպ, եւ անկից շաբաթ օր մեկներ էին ժամը 9,15ին, նոյն օրը ժամը 17,25ին ցամաք իջան Թէհրանէն 100 քիլոմեդր հեռու, չուզելով գիշեր ատեն վտանգի ենթարկուիլ՝ լեռնային շրջանի մը մէջ վայրէջքի պահուն:

Յաջորդ առտու, օդանաւորդները Թէհրան հասան ժամը 5.45ին: Պարսկաստանի եւ Ֆրանսայի միջեւ, օդային կապակցութիւնը հաստատուեցաւ այս կերպով 35 ժամ 55 վայրկեանէն, որուն 29 ժամ 45 վայրկեանը թռիչք՝ 5200 քիլոմէդրի վրայ:



Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ԻԹԱԼԻԻ Աղբիւր-Սերոբ խումբի ժողովը, այս շաբաթ գիշեր ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղի՝: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ԱՆԻԷՌ-ՊՈՒԱ ԲՈԼՈՆՊԻ Եռագոյն, Վիշապ եւ Փոթորիկ խումբերը ժողովի կը հրաւիրուին այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Ռիւ Շանպառի հաւաքատեղին: Կը զեկուցանէ Կ. Կ.ի ներկայացուցիչը:

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ շրջ. ներկայացուցչական ժողովը տեղի կ'ունենայ 27 Սեպտ. շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը, 262 rue Duguesclin.

ԼԻՈՆԻ Քեռի խումբի ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը 3,30ին, Ճանկէօզեանի ճաշարանը. ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ:

ԼԻՈՆԻ Կայծակ խումբի ընկերները ժողովի կը հրաւիրուին վաղը Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը:

ՄԱՐՍԷՅԼԻ Քրիստափոր նեթակոմիտէի բոլոր խումբերու ընկերները ժողովի կը հրաւիրուին այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին. բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

ՅՈՒՇԱՏԵՏՐ

Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի մասնաճիւղին վիճաբանական ժողովը վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին, Ֆլօրիայի մէջ: Նիւթ՝ Գործնապաշտութի՞ւն թէ գաղափարապաշտութիւն: Կը ներկայացուի նաեւ Միշէլ Սթրոկոֆի ֆիլմը:

«ՄՇԱԿՈՅԹԻ ՕՐ»Ը

Զ. Ե. Ո. Միութիւնը կը հրաւիրէ բոլոր միութիւնները եւ կազմակերպութիւնները խորհրդակցական ժողովի վաղը Եշ. իրիկուն ժամը 9ին, Ֆլօրիայի մէջ, որոշելու համար հանդէսին մանրամասնութիւնները:

Հանդէսը տեղի պիտի ունենայ Հոկտ. 11ին Շաբաթ գիշեր Սալ տը Ժէոկրաֆիի մէջ:

ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Կարօ Կարպուշեան որ կը բնակէր 20 rue des Feuillants, Marseille. Իմացնել՝ «Յառաջ»ի վարչութեան:



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H. STEPHAN

տի տայ անհրաժեշտ բացատրութիւններն ու լուսաբանութիւնները։

Ըսմէթ փաշա պատմականն ըրաւ նաեւ Զիլանի եւ Արարատի դէպքերուն եւ բացատրեց անոնց պատճառները։ Յայտնեց թէ շնորհիւ ոստիկանութեան(.°) որ եւ է միջադէպի առաջքն առնուած է։ Ժողովուրդը ինքն իսկ, քանիցս պաշտպանեց Հանրապետութիւնը։

Ըսմէթ փաշա աւելցուց նաեւ թէ զսպումի գործողութիւններու ընթացքին, դրացի պետութիւնները հաւատարմօրէն յարգած են դաշնագրերը, «ինչ որ պատասխան մը կը նկատուի բարի դրացնութեան եւ բարեկամական յարաբերութիւններու մէջ՝ Թուրքիոյ ուղիղ ընթացքին»։

Ազգ. Ժողովը կը վերաբացուի այսօր։

## Թուրք դահլիճին փոփոխութիւնները

«Թայմզ»ի Պոլսոյ Թղթակիցը կը գրէ.—

Ըսմէթ փաշա որոշած է քաշուիլ, որպէսզի պատրուակ ունենայ վերակազմելու դահլիճը։ Կը կարծուի թէ Եուսուֆ Քէմալ որ1922ին, Րէուֆ պէյի եւ Ֆէվզի փաշայի դահլիճներուն մասնակցած է, պիտի ստանձնէ դատական նախարարութիւնը՝ Մահմուտ Էսատի տեղ որ մեծ դժգոհութիւններու տեղի տուած է, մանաւանդ իր վերջին ճառէն ի վեր, որով կը յայտնէր թէ Թուրքիոյ ոչ-թուրք բնակիչները միայն մէկ իրաւունք ունին, — այն է ըլլալ ծառաներ եւ ստրուկներ։

Վասըֆ պէյ որ 1924ին, Ըսմէթի երկրորդ դահլիճին կ'անդամակցէր իբր կրթական գործավար, պիտի անցնի Ճէմիլ Հիւսնի պէյի տեղ, որ Պեռնի դեսպանութեան կոչուած է։ Մուսթաֆա Շէրիֆ պիտի ստանձնէ ազգ. տնտեսութեան գործավարութիւնը։ Դեռ յայտնի չէ թէ ով պիտի ստանձնէ հանր. շինութեանց գործավարութիւնը Րէճէպի տեղ, որ կ'անցնի Խալքի ընդհ. քարտուղարութեան, Սավֆէթի տեղ։

Սխալ է կարծել թէ այս դէպքերը առաջ պիտի բերեն Ըսմէթի անկումը եւ հետեւաբար Ֆէթհիի իշխանութեան բարձրացումը։ Նման փոփոխութիւն մը հաւանական չի նկատուիր մինչեւ որ Ըսմէթ վստահութեան քուէ չկարենայ ստանալ Ազգ. Ժողովէն։

## Գերման խաղախական տագնապը

Գերման նախարարաց բացառիկ խորհուրդը տեղի ունեցաւ առջի օր, կէսօրէն վերջ։ Նախարարները գծեցին կառավարական ծրագիր մը, որով հրովարտակներուն կուտան օրինական ուժ եւ այս կերպով կ'ապահովեն անոնց գործադրութիւնն, առանց ենթարկելու խորհրդարանի հաւանութեան։ Բայց դեռ մեծ փոփոխութիւններ պիտի կրեն կարգ մը ծրագիրներ, որովհետեւ տնտեսական եւ ելմտական կացութիւնն այսօր այն չէ, ինչ որ էր մէկ քանի ամիսներ առաջ։

Այն կարծիքը կը տիրէ թէ մէկ քանի շաբաթ առաջ ելմտական նախարարին լաւատես յայտարարութիւնները հիմնաւոր չէին, որովհետեւ, երբ ելմտական պաշտօնատուները կը մշակէին բարեփոխութեանց հիմնական գիծերը, ի նկատի ունէին ընդամէնը 1,600,000 անգործ, մինչ այսօր, այդ թիւը բարձրացած է 2,5միլիոնի։

Պրիւնինկ կը շարունակէ բանակցութիւնները զանազան կուսակցութեանց պետերուն, ապահովելու համար համար անոնց օժանդակութիւնը կամ չէզոքութիւնը։



## Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԸ

ԼԻՈՆԻ ՄԷՋ ԿԸ ՏՕՆՈՒԻ ՀՈԿՏ. 4ԻՆ

Բանախօսութիւն, երգ, արտասանութիւն։ Կը մասնակցի Տէսինի կոմիտաս երգչախումբը՝ ղեկավարութեամբ Ա. Մելքոնեանի։ Մանրամասնութիւնները յաջորդաբար։

ԹԱՏԵՐԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ԱՆԻԷՌ ՊՈՒԱ ՔՈԼՈՆՊԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Եօզ. եւ Շրջ. Հայր. Միութեան Անիէռի մասնաճիւղին։ 4 Սեպտ. Շաբաթ գիշեր մինչեւ լոյս։ Մանրամասնութիւնը մօտ օրէն։

ԴԵՐԱՍԱՆ Մ. ՄԱՐՈՒԹԵԱՆԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄՆԵՐԸ

ՄԱՐՍԷՅԼ.— Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Սալօն Շաբի մէջ, (84 Րիւ Շաբ)։ Կը ներկայացուի՝

ԲՈՌԸ կամ ՍԷՐ ԵՒ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆ

կը մասնակցի Մարսիլահայ Տրամաթիք Ստուտիայի կազմը
Տոմսերու գիները ժողովրդական



Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ԻԹԱԼԻԻ Աղբիւր-Սերոբ խումբի ժողովը, այս Շաբաթ գիշեր ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղին։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ԱՆԻԷՌ-ՊՈՒԱ-ՔՈԼՈՄՊԻ Եռագոյն, Վիշապ եւ Փոթորիկ խումբերը ժողովի կը հրաւիրուին այս Շաբաթ իրիկուն ժամ 8.30ին Րիւ Շանպարի հաւաքատեղին։ Կը զեկուցանէ Կ. Կ.ի ներկայացուցիչը։

ՊԱՆՆԷՕ-Քաշան Արծիւ խումբի ընկերական ժողովը այս կիրակի առաւօտ ժամը 9ին Մինաս Ալթունեանի բնակարանը, 17 rue Ampère Cachan.

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ շրջ. ներկայացուցչական ժողովը տեղի կ'ունենայ 27 Սեպտ. շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը, 262 rue Duguesclin,

ԼԻՈՆԻ Քեռի խումբի ժողովը այսօր Հինգշաբթի իրիկուն ժամը 3,30ին, Ճանկէօզեանի ճաշարանը. ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ։

ՄԱՐՍԷՅԼԻ Քրիստափոր ենթակոմիտէի բոլոր խումբերու ընկերները ժողովի կը հրաւիրուին վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին. բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։

ԼԻՈՆԻ Պատանեկան միութեան վիճաբանական ժողովը այսօր Հինգշաբթի ժամը 8ին գրադարանի սրահին մէջ։ Նիւթ «Հայաստանի Հանրապետութիւնը եւ բոլշեւիզմը»։

ԵՕԶԿԱՏԻ եւ շրջ. հայրենակցական փարիզի վարչական ժողովը այս կիրակի առաւօտեան ժամը 10ին խիստ կարեւոր օրակարգ: 131 Fbg. du Temple, Métro Bélleville.

«ՄՇԱԿՈՅԹԻ ՕՐ»Ը

Զ. Ե. Ո. Միութիւնը կը հրաւիրէ բոլոր միութիւնները եւ կազմակերպութիւնները խորհրդակցական ժողովի այսօր Եշ. իրիկուն ժամը 9ին, Ֆլորիայի մէջ, որոշելու համար հանդէսին մանրամասնութիւնները։

Հանդէսը տեղի պիտի ունենայ Հոկտ. 11ին Շաբաթ գիշեր Սալ տը Ժէօկրաֆիի մէջ։

## ՀԻՒԱՆԴՆԵՐ

Կատարեալ վստահութեամբ դիմեցէք մասնագէտ բժիշկներուն, 123 Պուլվ. Սէպասթոփոլ, մէթ. Սէն Տընի, Ռէօմիւր։ Վեներական ախտեր, ջերմամիզութիւն սուր եւ հինցած, անկարողութիւն, ֆրանկախտ, արեան, մորթի հիւանդութիւններ, արեան և մէզի քննութիւն, քիթի, կոկորդի եւ ականջի ցաւեր։ Դարմ. ելեկտրականութեամբ, ռէօնթկենեան եւ անդրամանիշակագոյն ճառագայթներով։ Խորհրդակց. ամէն օր 9-12 եւ 2-8։ Կիր. 9 12։ Ռուսերէն կը խօսուի։

## ՄԱՍՆԱԳԷՏ ԲԺԻՇԿՆԵՐ

96 r. Rivoli, մէթ. Շաթլէ։ Արմատ. եւ նոր մեթոտով դարմանում արանց եւ կանանց մորթի, արիւնի եւ վեներ. հիւանդութեանց (ֆրանկախտ, ջերմամիզ.) եւ վարխի։ Մասն. Լապօռաթուառ։ Խղճամիտ եւ արագ խորհրդացկութ. ամէն օր 9—12, 2—8 Կիրակի 9—12,

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի մասնաճիւղին վիճաբանական ժողովը այսօր Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին, Ֆլորիայի մէջ։ Նիւթ՝ գործնապաշտութի՞ւն թէ գաղափարապաշտութիւն։ Կը ներկայացուի նաեւ Միշէլ Սթրոկոֆի ֆիլմը։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H. STEPHAN






## ՖՐԱՆՍԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐՈՒ ՀԱՅ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ

*ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ ԳՐԱՏՈՒՆԸ, դպրոցական վերամուտի առթիւ, նպաստաւոր պայմաններով ֆրանսերէն ամէն տեսակ դասագիրքեր կը հայթայթէ հայ աշակերտներուն։*

*Գրատան մէջ կան* Larousse*ի*, Hachette*ի*, A. Colin*ի*, A. Michel*ի եւ ֆրանսական բոլոր մեծ տուներու հրատարակութեանց ճոխ մթերք մը։*

*Լոյս տեսաւ* Larousse*ի 1931ի բառարանը, գին 34 ֆրանք։ Մասնավճարներով կը հայթայթենք Լարուսի բոլոր հրատարակութիւնները (*Larousse du XXe siècle, Larousse Médical, Commercial, Universel *եւայլն։*

*Պահանջուած ամէն գիրք կը հայթայթենք անմիջապէս։*

*Գաւառի եւ արտասահմանի դպրոցներն ալ կրնան դիմել մեզ* Librairie H. Samuel, 51 Rue Monsieur le-Prince, Paris (5). Tél. Danton 88-65, Métro Odéon.

## ՁՐԻ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ ՖՐԱՆՍ. ԼԵԶՈՒԻ
### ՕՏԱՐՆԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ

Ֆրանսա եկող օտարականներ, չգիտնալով այս երկրին լեզուն, յաճախ կ'արգիլուին գործ գտնելէ, բաց աստի, չկարենալով ինքզինքնին արտայայտել, բոլորովին օտարացած կը զգան իրենք զիրենք։ Առաւելագոյն չափով կը զրկուին ֆրանսացիներու հետ յարաբերութիւն մշակելէ, եւ թատրոններէն, գրադարաններէն, հրապարակախօսութիւններէն թանգարաններէն, եւայլն։

Այդ օտարականներուն օգնելու համար է որ «Le Foyer Français»ն ստեղծած է շարք մը ձրի դասընթացքներ, որոնք կ'աւանդուին անձնուէր ուսուցիչներու կողմէ։ կանոնաւոր կերպով յաճախողներ, կրնան ֆրանսերէն լեզուն սորվիլ։

Երեկոյեան ժամը 8.30ին, հետեւեալ թաղային վարժարաններուն մէջ 12, Rue Titon (11e) Métro: Reuilly — երկուշաբթի եւ չորեքշաբթի. 43, Rue des Poissonnieres (18e), — երկուշաբթի եւ չորեքշաբթի 51, Rue Ramponneau, (20e).

Բարձրագոյն դասընթացք. — երկուշաբթի եւ չորեքշաբթի միջին եւ նախապատրաստական դասընթացք. — բշ. եւ եշ. 3, Rue Ferdinand Berthoud. — երեքշաբթի եւ Հինգշաբթի. Rue des Hospitalières. — երկուշաբթի եւ Հինգշաբթի. Boulogne. — երեքշաբթի եւ Ուրբաթ. Pasteur - Moutreuil. — Երկուշաբթի եւ Չորեքշաբթի. Rue Cujas.

Դասընթացքները պիտի սկսին Հոկտեմբեր 1ին։ Ուրիշ տեղեկութեանց համար դիմել բոլոր ուսուցիչներուն դասընթացքի պահերուն, կեդրոնատեղի 18, Rue du Banquier, Paris (13e).

ԹՕՓԱԼԵԱՆ ԵՂԲԱՐՔ Հալէպի իրենց «ԱՐԱՔՍ» տպարանը փոխադրած են ՓԱՐԻԶ. 221 ԼԱՖԱՅԷԹ ՓՈՂՈՑ եւ կը կատարեն տպագրական ամէն տեսակ աշխատանք, արուեստին պահանջած գեղարուեստական նրբութեամբ եւ արդիական անթերի ճաշակով։




### Ա Զ Դ

Սեւրի Մուրատեան վարժարանի երկրորդ տարեշրջանի վերաբացումը տեղի կ'ունենայ յառաջիկայ Հոկտ. 1ին։

Կանոնաւոր դասախօսութիւնները կը սկսին Հոկտ. 6ին, իսկ Հոկտ. 1—6 տեղի պիտի ունենան վերաքննութիւնները։

Նոր աշակերտներու արձանագրութիւնները կը փակուին Հոկտեմբեր 15ին։

ՏԵՍՉՈՒԹԻՒՆ



## Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԸ

ԼԻՈՆԻ ՄԷՋ ԿԸ ՏՕՆՈՒԻ ՀՈԿՏ. 4ԻՆ

*Բանախօսութիւն, երգ, արտասանութիւն։ Կը մասնակցի Տէսինի կոմիտաս երգչախումբը՝ ղեկավարութեամբ Ա. Մելքոնեանի։ Մանրամասնութիւնները յաջորդաբար։*

## Հ. Մ. Ը. Մ.ի
## ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՄԱՐԶԱՏՕՆ

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ՝ **ՏԻԳՐԱՆ ԽԱՆ ՔԷԼԷԿԵԱՆԻ**

*Այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին,*

*ՍԹԱՏ ԷԼԻԶԱՊԷԹի մէջ (մէթրօ Փորթ տ'Օրլէան)*

*Տողանցքին կը մասնակցին 400 հոգիէ աւելի սկաուտներ, սկաուտուհիներ, մարզիկներ եւ ֆութպոլիստներ իրենց պաշտօնական տարազով։ Սկզբնաւորութեան տեղի կ'ունենայ, Հ. Մ. Ը. Մ.ի երկու զօրաւոր խումբերու ֆութպոլի բաժակի ֆինալ մրցում մը։*

*ՏՈՄՍԵՐՈՒ ԳԻՆԵՐ 5, 10 եւ 20 ՖՐԱՆՔ*

Նախապէս ապահովեցէք ձեր տոմսերը, 1 Rue Saulnier

ՄԱՄԼՈՅ ՏԱԿ Է

## "ԼԻՈՆԱՀԱՅ ՈՒՂԵՑՈՅՑ,,Ը
(ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ)

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ՏՊ. "ԵՓՐԱՏ,,Ի

ԼԻՈՆ

*Սեփական գործ ունեցողներու եւ խանութպաններու համար կը տրամադրենք էջեր, իրենց յայտարարութեանց համար։ Շահագրգռուողներէ կը խնդրուի դիմել մինչեւ Սեպտեմբերի վերջը։*

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ԱՐՁԱԿ ԷՋԵՐ ԵՒ ՀԷՔԵԱԹՆԵՐ

ՌՈՒԲԷՆ ԶԱՐԴԱՐԵԱՆԻ

(Ա. հրատարակութիւն «ՆԱՀԱՏԱԿ ԳՐՈՂՆԵՐՈՒ ԲԱՐԵԿԱՄՆԵՐ»ՈՒ)

Հեղինակին նկարով, գեղատիպ կողքով՝ Մ. Քէպապճեանէ, կենսագրական ամփոփ յառաջաբանով եւ գեղեցիկ տպագրութեամբ։

Գինն է Ֆրանսայի, Ֆրանս. գաղութներու եւ Պալքաններու համար 20 ֆր. միւս երկիրները 25 ֆր. կամ 1 տոլար։

Ստանալու համար դիմել «Յառաջ»ի վարչութեան՝ Լ. Գեւոնեանի 235 Fbg. St, Martin, Paris 10e.

**ԹԱՏԵՐԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ԱՆԻԷՌ ՊՈՒԱ ՔՈԼՈՆՊԻ ՄԷՋ**

*Նախաձեռնութեամբ Եօզ. եւ Շրջ. Հայր. Միութեան Անիէռի մասնաճիւղին։ 4 Հոկտ. Շաբաթ գիշեր մինչեւ լոյս։*

*Մանրամասնութիւնը մօտ օրէն։*

### Հ. Յ. Դ.

*Փ Ա Ր Ի Զ*

ԻԹԱԼԻԻ Աղբիւր-Սերոբ խումբի ժողովը, այս Շաբաթ գիշեր ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղին։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

*ԱՆԻԷՌ-ՊՈՒԱ.ՔՈԼՈՆՊԻ Եռագոյն, Վիշապ եւ Փոթորիկ խումբերը ժողովի կը հրաւիրուին այս Շաբաթ իրիկուն ժամ 8.30ին Ուիւ Շանպառի հաւաքատեղին։ Կը ներկայանայ Կ. Կ.ի ներկայացուցիչը։*

ՊԱՆԵԷՕ-Քաշան Արծիւ խումբի ընկերական ժողովը այս կիրակի առաւօտ ժամը 9ին Մինաս Ալթունեանի բնակարանը, 17 rue Ampère Cachan.

*Գ Ա Ւ Ա Ռ*

ԼԻՈՆԻ Շրջ. Ներկայացուցչական ժողովը տեղի կ'ունենայ 27 Սեպտ. Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը, 262 rue Duguesclin,

*ՎԻԷՆԻ Ընդհ. ընկերական ժողովը այս Կիրակի ժամը 2.30ին։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։*

Հ. Յ. Դ. Լիոնի Պատ. Միութեան ժողովրդային Գրադարանը բաց է, Բշ. Դշ. Եշ. եւ Ուրբաթ երեկոները ժամը 7—8.30։

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԽՕՋԿԱՏԻ եւ Շրջ. հայրենակցական փարիզի վարչական ժողովը այս կիրակի առաւօտեան ժամը 10ին խիստ կարեւոր օրակարգ։ 131 Fbg. du Temple, Métro Bélleville.



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H. STEPHAN

## Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ
### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԸ

Այս երեքշաբթի իրիկուն ժամը 8ին, 63 րիւ տը լա Ռէփիւպլիք: կարեւոր օրակարգ, ներկայ կ'ըլլայ կ. կ.ի լիազօրը:

## Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԸ

### ԼԻՈՆԻ ՄԷՋ ԿԸ ՏՕՆՈՒԻ ՀՈԿՏ. 4ԻՆ

*Բանախօսութիւն, երգ, արտասանութիւն: կը մասնակցի Տէսինի կոմիտաս երգչախումբը՝ ղեկավարութեամբ Ա. Մելքոնեանի: Մանրամասնութիւնները յաջորդաբար:*



# Հ. Մ. Ը. Մ.ի
# ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՄԱՐԶԱՏՕՆ

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ՝ ՏԻԳՐԱՆ ԽԱՆ ՔԷԼԷԿԵԱՆԻ

*Վաղը Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին,*

*ՍԹԱՏ ԷԼԻԶԱՊԷԹի մէջ (մէթրօ Փորթ տ'Օրլէան)*

*Տողանցքին կը մասնակցին 400 հոգիէ աւելի սկաուտներ, սկաուտուհիներ, դպրոցասէրի սանուհիներ, մարզիկներ եւ ֆութպոլիստներ իրենց պաշտօնական տարազով: Սկզբնաւորութեան տեղի կ'ունենայ, Հ. Մ. Ը. Մ.ի երկու զօրաւոր խումբերու ֆութպոլի բաժակի ֆինալ մրցում մը:*

*ՏՈՄՍԵՐՈՒ ԳԻՆԵՐ 5, 10 եւ 20 ՖՐԱՆՔ*

Նախապէս ապահովեցէք ձեր տոմսերը, 1 Rue Saulnier

Ընձրեւի պարագային ժողովուրդը պատսպարուած է:

## ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏՐԱՄԱԹԻՔ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ

7րդ տարի — ղեկավար՝ Տ. ՆՇԱՆԵԱՆ — 116րդ ներկայացում

ԹԱՏՐՈՆ ALBERT IER 64 RUE DU ROCHER

Բացում 7րդ Թատերաշրջանի

5 ՀՈԿՏԵՄԲԵՐ ԿԻՐԱԿԻ — ՑԵՐԵԿՈՅԹ - ԵՐԵԿՈՅԹ

ի պատիւ դերասանուհի

### ՏԻԿԻՆ ՍԻՐՈՒՀԻ ՆՇԱՆԵԱՆԻ

Ա. անգամ ըլլալով պիտի ներկայացուի Մ. ՄԷԹԷՐԼԻՆԿԻ

# ՄՕՆՆԱ-ՎԱՆՆԱ

պատմական հռչակաւոր Թատերախաղը (3 արար)

բեմադրութիւն եւ Թարգմանութիւն Տ. ՆՇԱՆԵԱՆԻ

*Կը մասնակցին՝ Փարիզահայ բեմի լաւագոյն ուժերէն՝ ՏԻԿԻՆ ՍԻՐՈՒՀԻ ՆՇԱՆԵԱՆ (Մօննա-Վաննա), Ա. ԳՄԲԷԹԵԱՆ (Կիտօ), ՏՐԴԱՏ ՆՇԱՆԵԱՆ (Մառքօ), Շ. ՍԱՐԵԱՆ (Բրէնզիվալ), Ս. ՄԱԳՍՈՒՏԵԱՆ (Թօռսօ), Վ. ՅԱԼԹՈՒՆԵԱՆ (Թռէվիւլզիօ), եւն.:*



ՏԻԿԻՆ ՍԻՐՈՒՀԻ ՆՇԱՆԵԱՆ
Մօննա-վաննայի դերին մէջ

ՑԵՐԵԿՈՅԹ ԺԱՄԸ 15ԻՆ — ԵՐԵԿՈՅԹ ԺԱՄԸ 20.30ԻՆ

(երեկոյթը կ'աւարտի ճիշդ ժամը 23.30ին)

*ԱՆՕՐԻՆԱԿ ԲԵՄԱԴՐՈՒԹԻՒՆ — 30 ՀՈԳԻ ԲԵՄԻ ՎՐԱՅ — ՃՈԽ ՏԷՔՈՐ ԵՒ ՀԱԳՈՒՍՏ*

*(Գիները սովորական)* — *Անպայման փնտռեցէք ճոխ յայտագիրը*

*Տոմսերը կը ծախուին Հրանտ-Սամուէլ գրատունը* 51 Rue Mr. le Prince. *Ճաշարան Լիլա,* 24 Rue St. Lazare *եւ ճաշարան Ֆլորիա* 61 Rue Mr. le Prince. *իսկ Կիրակի տոմսերը եկեղեցւոյն դիմացի սրճարանը:*



## ՊԱՏԵՀՈՒԹԻՒՆ

Ստիպողական մեկնումի պատճառաւ ծախու է դերձակի բնակութեան յարմար սենեակ մը եւ բակէն օգտուելու իրաւունք: Ջուր, կազ, ելեկտրականութիւն: Պայ՝ 6 տարի, վարձք՝ տարեկան 3000 ֆրանք: իրաւունք կայ ուրիշ գործով զբաղելու (բացի նպարավաճառութենէ):

Մանրամասնութիւններու համար դիմել Կ. Մուրատեանի, Rue Pelleport, Մէթրօ Pelleport.



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

